Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 2 ՀՈՒՆՎԱՐ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:


---





# ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ


Լ. ՀՈՎՍԵՓՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահի տեղակալ


ՍՍՌՄ Գերագույն Սովետի նախորդ ընտրություններից անցել է մոտ 4 տարի: Ժամանակամիջոցը մեծ չէ, սակայն որքան շատ բան է կատարել մեր ժողովուրդը այդ կարճ ժամանակամիջոցում, որքան փոփոխություններ են տեղի ունեցել մեր անծայրածիր Հայրենիքի քարտեզի վրա:

ՍՍՌՄ չորրորդ գումարման Գերագույն Սովետի գործունեության ժամանակաշրջանում մեր երկրի կյանքը լի էր քաղաքական մեծ իրադարձություններով: Սովետական ժողովուրդները մեծագույն խանդավառությամբ տոնեցին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պանծալի 40-ամյակը, սովետական սոցիալիստական հասարակարգը բազմակողմանիորեն դրսե-





վորում է իր գերազանցությունը և ստեղծագործական անսպառ հնարավորությունները կապիտալիստականի նկատմամբ։ Արդյունաբերության և շինարարության կառավարումն էլ ավելի կատարելագործելու, ՍՍՌՄ ժողովրդատնտեսական պլանի և Պետական բյուջեի վերաբերյալ ՍՍՌՄ Գերագույն Սովետի որոշումները, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի կապակցությամբ Սովետական Միության ժողովուրդներին ուղղված Կոչը և այլ շատ փաստաթղթեր մոբիլիզացիայի ենթարկեցին մեր աշխատավորության ստեղծագործական ուժերը՝ ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները կենսագործելու համար։

Սովետական սոցիալիստական պետությունը դեմոկրատիայի բարձրագույն ձևն է, ժողովրդի դեմոկրատիա է իր էությամբ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան մարդկության պատմության մեջ առաջին անգամ պետական իշխանությունն ամբողջությամբ տվեց ժողովրդին՝ պատմության իսկական կերտողին, նյութական և կուլտուրական արժեքների իսկական ստեղծողին։

Կոնստիտուցիայի համաձայն, ամբողջ իշ-



խանությունը ՍՍՌՄ-ում պատկանում է քաղաքի և գյուղի աշխատավորներին՝ հանձինս աշխատավորների դեպուտատների Սովետների։

Ինչպես հայտնի է, մեր երկրում ընտրությունները անց են կացվում ընտրողների հսկայական ակտիվության իրադրության պայմաններում, միահամուռ մասնակցությամբ։ Այսպես, ՍՍՌՄ Գերագույն Սովետի 1946 թվականի ընտրությունների ժամանակ քվեարկությանը մասնակցել է ընտրողների 99,7 տոկոսը, 1950 և 1954 թվականներին՝ 99,98 տոկոսը։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի և միութենական ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների բոլոր դեպուտատները ընտրվում են ձայների ճնշող մեծամասնությամբ, որը վկայում է մեր ժողովրդի ջերմ հայրենասիրությունն ու բարոյաքաղաքական միասնությունը։

Սովետական ընտրական սիստեմը ամենադեմոկրատականն է աշխարհում, այն լիովին ապահովում է բոլոր ընտրողների կամքի արտահայտման ազատությունը՝ ինչպես պետական իշխանության բարձրագույն օրգանների, այնպես էլ աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրությունների ժամանակ։ Մեր ընտրություն-

ներն իսկական ազատ, իսկական դեմոկրատական ընտրություններ են։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները, որ կատարվում են ամենադեմոկրատական Կոնստիտուցիայի հիման վրա, մեծապես կնպաստեն աշխատավորության՝ իրենց երկրի իսկական տերերի ստեղծագործական նախաձեռնության հետագա է՛լ ավելի զարգացման գործին։ Ընտրական կամպանիան սովետական մարդկանց քաղաքական և աշխատանքային ակտիվության նոր վերելք է առաջացրել։

Այս ընտրությունների ընթացքում ամբողջ երկրով մեկ, է՛լ ավելի է ծավալվում սոցիալիստական մրցությունը, որն ուղղված է ՍՍՌՄ տնտեսական գլխավոր խնդրի հաջող լուծմանը՝ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ հասնելու և անցնելու կապիտալիստական առավել զարգացած երկրներից։ Այդ բանի համար մեզ մոտ ստեղծված են բարոյական և նյութական բոլոր նախադրյալները։

Պարտիական կազմակերպությունների օգնությամբ և ղեկավարությամբ մեր ագիտատորները պետք է ավելի ուժեղ թափով ծավալեն ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների պատվին կազմակերպված սո-



ցիալիստական մրցությունը, հասնեն այն բանին, որ գերազանց ցուցանիշներով կատարվեն ստանձնած պարտավորությունները։

Կոմունիստական պարտիան իր XX համագումարում ընդգծեց աշխատավորների դեպուտատների Սովետների գործունեությունը աշխուժացնելու կարևորությունը։ Պարտիայի այդ ցուցումը անշեղորեն կենսագործվում է։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ զգալիորեն աճել է Սովետների դերը տնտեսական և կուլտուրական շինարարության, բնակչության ամենօրյա կարիքներն ու պահանջմունքները բավարարելու, աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործում և այլ բնագավառներում։

Ռեսպուբլիկայի տեղական Սովետների վրա մեծ պատասխանատվություն է դրվում։ Ընտրական տեղամասեր կազմակերպելուց և տեղամասային ընտրական հանձնաժողովներ ընտրելուց հետո, անհրաժեշտ է լուրջ աշխատանք տանել ընտրողների ցուցակները կազմելու ուղղությամբ։ Պետք է ստեղծել բոլոր պայմանները, որպեսզի յուրաքանչյուր ընտրող հնարավորություն ու-

նենա ազատ կերպով իրականացնելու իր ընտրական իրավունքները։ Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետները պետք է խստորեն հետևեն ընտրական օրենքի ճշգրիտ պահպանման վրա։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրական կամպանիան մեր ռեսպուբլիկայի պարտիական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպություններից մեծ աշխատանք է պահանջում։ Հարկավոր է լայնորեն օգտագործել նախընտրական ագիտացիան և մոբիլիզացնել աշխատավորների ուժերը պարտիայի և կառավարության կողմից ռեսպուբլիկայի առջև ընթացիկ տարում դրված տնտեսական խնդիրները հաջող կատարելու համար։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստման ժամանակ պարտիական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները պետք է ագիտացիոն աշխատանք ծավալեն բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների միջև, պարզաբանեն ընտրողներին Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության արտաքին ու ներքին իմաստուն, խորաթափանց քաղաքականությունը,



որն արտահայտում է ժողովրդի կենսական շահերը, ՍՄԿՊ XX համագումարի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի հոբելյանական սեսիայի և ՍՄԿՊ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի որոշումները։

Ագիտատորների կարևորագույն խնդիրն այն է, որպեսզի աշխատավորությանը պարզաբանեն Սովետական Միության և սոցիալիստական լագերի երկրների համաշխարհային պատմական նվաճումները, պատմեն ժողովուրդների պայքարի մասին՝ հանուն կայուն խաղաղության ամբողջ աշխարհում, կոմունիստական շինարարության մեծագույն հեռանկարների մասին։ Ագիտատորների պարտքն է՝ պարզորոշ ու մատչելի կերպով ընտրողներին ցույց տալ սովետական դեմոկրատիայի առավելությունները, որոնք սկզբունքորեն ու էությամբ տարբերվում են բուրժուական սահմանափակ ու կեղծ դեմոկրատիայից։

Ընտրությունների նախօրյակին մեր ռեսպուբլիկայի քաղաքներում ու գյուղերում կայացվող ընտրողների ժողովներում կլինեն առաջարկներ, քննադատական դիտողություններ՝ տեղական Սովետների և պետական տարբեր հիմնարկների աշխատանքի վերաբերյալ։ Անհրաժեշտ է ուշադրությամբ,

զգայուն կերպով լսել ընտրողների ձայնը, արագ արձագանքել նրանց քննադատությանը և վերացնել թերությունները, ամեն կերպ բարձրացնելով մեր հիմնարկների աշխատանքի կուլտուրան։

ՍՍՌՄ պետական իշխանության բարձրագույն օրգանի առաջիկա ընտրությունները տեղի կունենան սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի բոլոր ճյուղերի նոր հզոր վերելքի իրադրության մեջ, ընտրությունները կօժանդակեն աշխատավորության ամենալայն մասսաների հետ մեր պարտիայի կապի է՛լ ավելի ամրապնդմանը, բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի քաղաքական և ստեղծագործական ակտիվության հետագա է՛լ ավելի վերելքին։

Հայաստանի աշխատավորները, ինչպես նաև մեր երկրի բոլոր ժողովուրդները, կներդնեն իրենց բոլոր ուժերը՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները աշխատանքային նորանոր սխրագործություններով ու նվաճումներով դիմավորելու համար, է՛լ ավելի սերտորեն կհամախմբվեն հարազատ Կոմունիստական պարտիայի շուրջը, որը մեր ժողովրդին հաջողությամբ տանում է կոմունիստական շինարարության ուղիով։

---

# ԶՐՈՒՅՑ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## Խ. ՍԱՐԳՍՅԱՆ

Վերջերս ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը քննության առավ ՍՍՌՄ արհեստակցական միությունների աշխատանքի մասին հարցը։ Պլենումը նշեց, որ սովետական իշխանության 40 տարում սոցիալիզմի ձեռք բերած մեծ հաղթանակների մեջ հսկայական դեր են խաղացել արհեստակցական միությունները, որոնք աշխատավորների միլիոնավոր մասսաների համար դարձել են դաստիարակության իսկական դպրոց, կառավարման ու տնտեսավարման դպրոց, կոմունիզմի դպրոց։

Եվ իրոք, սովետական արհմիությունները սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում խոշոր աշխատանք են կատարել պարտիայի կողմից առաջադրած խըն-

դիրներն անշեղորեն կենսագործելու գործում։

Արհմիությունների ակտիվ մասնակցության շնորհիվ մասսայական բնույթ է ըստացել սոցիալիստական մրցությունը, անընդհատ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, բարելավվել են աշխատավորների կուլտ-կենցաղային պայմանները։

Սովետական արհմիությունները պարտիայի ղեկավարությամբ ներկայումս ձեռնամուխ են եղել ՍՄԽՄ գլխավոր տնտեսական խնդրի կենսագործմանը՝ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ հասնել և առաջ անցնել կապիտալիստական խոշորագույն երկրներից, այդ թվում ԱՄՆ-ից։

Այժմ սովետական արհմիությունները անդուլ աշխատանք են կատարում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հզոր վերելքի, մեր երկրի ռազմատնտեսական հզորության ամրապնդման, տեխնիկական առաջադիմության համար, որպեսզի անընդհատ աճի աշխատանքի արտադրողականությունը, բոլոր օղակներում կիրառվի տնտեսման ու խնայողության ռեժիմը, առավելագույն արդյունավետությամբ օգտագործվեն



ռեզերվները և անընդհատ բարձրանա աշխատավորների նյութական ապահովվածությունն ու կուլտուրական մակարդակը։

Մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան պլենումը միաժամանակ պահանջեց բարձրացնել արհմիությունների դերը տնտեսական շինարարության մեջ։ Այդ կապակցությամբ պլենումը արհմիությունների ուշադրությունը հրավիրեց այն փաստի վրա, որ մրցության ղեկավարման ասպարեզում դեռևս շատ է ձևականությունը։

Մեր ժողովրդական տնտեսության հաղթական առաջընթացի շահերը պահանջում են վճռականորեն վերացնել թերությունները մրցության ղեկավարման մեջ, այն հասցնել նոր, ավելի բարձր աստիճանի, ուշադրությունը կենտրոնացնել բոլոր բանվորներին և ինժեներա-տեխնիկական աշխատողներին մրցության մեջ ներգրավելու վրա, բոլոր բանվորների կողմից արտադրական նորմաների կատարման և գերակատարման, առաջավորների փորձի լայն տարածման, ետ մնացողներին ընկերական օգնություն կազմակերպելու վրա։

Ներկայումս արհմիությունների կարևորագույն խնդիրներից մեկն էլ աշխատավորնե-

րին արտադրության կառավարման գործում ներգրավելն է։ Այդ բնագավառում խոշոր դեր են խաղում արտադրական խորհրդակցությունները, որոնք հնարավորություն են տալիս միանձնյա ղեկավարության սկզբունքները զուգակցել ներքևից կատարվող վերահսկողության հետ։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը նպատակահարմար համարեց արտադրական խորհրդակցությունները դարձնել մշտապես գործող։ Այդ արվեց նրա համար, որպեսզի արտադրության կառավարումը տեղի ունենա բանվոր-ծառայողների լայն մասնակցությամբ, որպեսզի արտադրական խորհրդակցությունները դառնան ադմինիստրացիայի, պարտիական ու կոմերիտական կազմակերպությունների, գիտա-տեխնիկական ընկերությունների ներկայացուցիչներին ընդգրկող խորհրդակցություններ։

Արհմիությունների համար այժմ կարևորագույն հարց է նաև ռացիոնալիզատորների ու գյուտարարների շարժման բարելավումը։ Խնդիր է դրվում գյուտարարների և ռացիոնալիզատորների ստեղծագործական նախաձեռնությունն ի սպաս դնել ժողովրդատնտեսական կարևորագույն խնդիրների կատարմանը, միաժամանակ սահմանելով



խիստ վերահսկողություն ռացիոնալիզատորական առաջարկները ու գյուտերը ժամանակին քննարկելու և դրանք արտադրության մեջ արմատավորելու նկատմամբ։

Այսուհետև ՀԱՄԿԽ-ը, արհմիությունների կենտկոմները, ռեսպուբլիկական խորհուրդները ավելի ակտիվորեն կմասնակցեն սովետական և տնտեսական օրգանների աշխատանքներին։

Վերջին ժամանակներս արհմիությունների ակտիվ մասնակցությամբ մեր պարտիան և կառավարությունը մի շարք կարևոր միջոցառումներ իրագործեցին ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման ուղղությամբ՝ բարձրացվեց ցածր վարձատրվող բանվոր-ծառայողների աշխատավարձը, կրճատվեց աշխատանքային օրը՝ նախատոնական և նախահանգստյան օրերին, իրագործվում է յոթժամյա, իսկ ստորերկրյա աշխատանքներում՝ վեցժամյա աշխատանքային օրվան անցնելու հարցը, ավելացվել են կենսաթոշակներն ու նպաստները, առաջադրված և հաջողությամբ լուծվում է մոտակա 10—12 տարում բնակարանների պակասը վերացնելու խնդիրը։

Չնայած ժողովրդի բարեկեցության բարձրացման վերաբերյալ կենսագործված վերը

հիշված խոշոր միջոցառումներին, արհմիությունները առաջիկայում առանձնահատուկ ուշադրություն են դարձնելու բանվորների ու ծառայողների աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավման վրա։

Միայն վերջին հինգ տարում Սովետական պետությունը աշխատանքի պաշտպանության և անվտանգության տեխնիկայի ապահովման վրա ծախսել է ավելի քան 11 միլիարդ ռուբլի։

Այդ բոլորի հետ միասին արհմիությունների և տնտեսական օրգանների առջև խնդիր է դրվում՝ մշտապես կատարելագործել աշխատավարձի սիստեմը և հասնել այն բանին, որ աշխատավարձի ավելացումը խոշոր լծակ դառնա աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։ Բացի դրանից, արհմիությունները առաջիկայում ավելի ակտիվորեն կմասնակցեն բնակարանային ու կուլտ-կենցաղային շինարարության աշխատանքներին, բնակելի տարածության բաշխմանը։

Սովետական արհմիություններն իրականացնելով կոմունիզմի դպրոցի իրենց դերը, ակտիվորեն նպաստում են բանվոր դասակարգի և ինտելիգենցիայի կոմունիստական գիտակցության բարձրացմանը։



Արհմիությունները կուլտլուսհիմնարկների բազմաթիվ ցանցի միջոցով լայն օգնություն են ցույց տալիս աշխատավորներին, նրանց հանրակրթական և արտադրական-տեխնիկական մակարդակը բարձրացնելու գործում։

Նրանք սկսել են ավելի բազմակողմանիորեն հոգ տանել աշխատավորների գեղարվեստական ինքնագործունեության, ֆիզկուլտուրայի, բանվոր-ծառայողների երեխաների դաստիարակության, նրանց հանգստի կազմակերպման մասին։

Սակայն արհմիությունների դաստիարակչական աշխատանքի գաղափարական մակարդակը և թափը դեռևս ետ են մնում աշխատավորների օրավուր աճող պահանջներից։ Կուլտ-մասսայական աշխատանքը հաճախ կատարվում է կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրներից կտրված և դեռևս չի ընդգրկում աշխատավորների զգալի մասը։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը անհրաժեշտ համարեց արմատապես բարելավել աշխատավորների մեջ կատարվող արհմիությունների դաստիարակչական և կուլտ-մասսայական աշխատանքը, ուժեղացնել պայքարը հետամնաց հայացքների և տրամադրու-

թյունների դեմ և ծավալել առողջ կենցաղի պրոպագանդան։ Արհմիությունները պետք է ժողովրդական մասսաներին դաստիարակեն սովետական հայրենասիրության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության ոգով, նրանց մեջ զարգացնեն երկրի տիրոջ զգացումը, բարձրացնեն պատասխանատվությունը Հայրենիքի հանդեպ, անդադրում պայքարեն մեր երկրում նյութական բարիքների առատություն ստեղծելու համար։

Արհմիությունների կարևորագույն խնդիրներից մեկն էլ կոմերիտմիության հետ միասին երիտասարդության լայն շրջանում քաղաքական-դաստիարակչական աշխատանք կատարելն է։ Խնդիր է դրվում, որ արհմիությունները ավելի մեծ ուշադրություն դարձնեն երիտասարդության հանգստի ու կենցաղի հարցերի վրա, կուլտ-մասսայական աշխատանքի կազմակերպման վրա։

Անհրաժեշտ է երիտասարդ բանվորներին ու բանվորուհիներին դաստիարակել աշխատանքի և հանրային սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, իր ձեռնարկության նկատմամբ սիրո ոգով, օգնելով նրանց տիրապետելու ընտ-



րած մասնագիտությանը և ընդլայնելու իր կուլտուրական տեսադաշտը։

Վերջերս պարտիայի և կառավարության որոշումներին համապատասխան վերակառուցվեցին արդյունաբերության և շինարարության ղեկավարման մեթոդները, լիկվիդացվեցին մի շարք մինիստրություններ, ստեղծվեցին ժողտնտխորհուրդներ։ Այդ կապակցությամբ արհմիությունները մի շարք միջոցառումներ ձեռնարկեցին իրենց աշխատանքը բարելավելու համար։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը նպատակահարմար համարեց ընդլայնելու արհմիությունների ֆաբրիկա-գործարանային կոմիտեների ֆունկցիաները, նրանց իրավունք տալ մասնակցելու ձեռնարկությունների արտադրական-ֆինանսական պլանների մշակմանը, աշխատանքի նորմավորմանը և աշխատավարձ վճարելու հարցերի լուծմանը, ինչպես նաև վերահսկելու կոլեկտիվ պայմանագրերի կատարմանը։ Բացի այդ, արհմիություններն իրավունք ունեն իրենց կարծիքը հայտնելու տնտեսական ղեկավար պաշտոնների համար առաջադրվող թեկնածուների մասին և թույլ չտալ բանվորներին ու ծառայողներին աշխատանքից ազատել առանց իրենց համաձայնության։



Կոմունիստական և բանվորական պարտիաների խորհրդակցություններում ընդունված Դեկլարացիան և Խաղաղության Մանիֆեստը նոր ուղիներ բացեցին միջազգային բանվորական և արհմիութենական շարժման հետագա զարգացման համար։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը պահանջեց սովետական արհմիություններից ակտիվացնել իրենց միջազգային գործունեությունը, ամրապնդել կապերը արտասահմանյան երկրների արհմիությունների հետ, ակտիվորեն նպաստել Արհմիությունների համաշխարհային ֆեդերացիայի ամրապնդմանը, որպես կարևոր կենտրոնի, որի շուրջը համախմբվում են համաշխարհային արհմիութենական շարժման առաջադեմ ուժերը։

Ըստ որում կապերը պետք է ընդլայնել բոլոր արհմիությունների հետ, անկախ նրանց բնույթից, այդ թվում նաև ռեֆորմիստական, կաթոլիկական և այլ միավորումներին հարող արհմիութենական ազգային կենտրոնների, գաղութային և կախյալ երկրների արհմիությունների հետ։

Սովետական արհմիությունների խնդիրն այս ասպարեզում այն է, որ ավելի ակտիվորեն և համոզիչ կերպով մասսայականացնեն ՍՍՌՄ բանվոր դասակարգի մեծ նվա-



ճումները, պրոպագանդեն սոցիալիզմի առավելությունները, ցույց տան, որ այսպես կոչված «ժողովրդական կապիտալիզմը» և «աշխատանքի ու կապիտալի համագործակցության» կեղծ տեսությունները վնասակար են, մերկացնել արհմիությունների ռեակցիոն պարագլուխներին և ամեն կերպ օգնել միջազգային արհմիութենական շարժման զարգացմանը։

Սովետական արհմիությունները կարող են հաջողությամբ իրականացնել այս բոլոր խնդիրները միայն Կոմունիստական պարտիայի կողմից ղեկավարվելու, մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ տեսությամբ զինվելու և այն պրակտիկ կյանքում իրագործելու պայմաններում։

Սովետական արհմիությունները զինված ՍՄԿՊ XX համագումարի և Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի պատմական որոշումներով, Կոմունիստական պարտիայի անմիջական ղեկավարությամբ պատվով կկատարեն իրենց վրա դրված բոլոր խնդիրները։

---

## ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

# ԱՐՄԱՏԱՎՈՐՎՈՒՄ ԵՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՆՈՐ ԵՂԱՆԱԿՆԵՐ

Ի. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Երևան կայարանը Անդրկովկասյան երկաթուղու կարևոր նշանակություն ունեցող կայարաններից մեկն է։ Այստեղ ամեն օր Սովետական Միության տարբեր վայրերից ստացվում և փոխադրվում են հարյուրավոր վագոններով շինանյութեր, արդյունաբերական, լայն սպառման ապրանքներ, մեքենայական սարքավորումներ և այլ կարևոր բեռներ։

Դեռ երկու տարի առաջ ՀԿՊ 18-րդ համագումարը լուրջ խնդիրներ դրեց ռեսպուբլիկայի երկաթուղայինների առջև։ Տարեցտարի աճող արդյունաբերական և գյուղատնտեսական բեռների փոխադրումները ապահովելու համար համագումարը երկաթուղայիններից պահանջեց լրիվին օգտագործել վագոնների բեռնատարողությունը, երկա-



թուղային տրանսպորտի ներքին ռեզերվները, արագացնել նրանց շրջապտույտը։

Երևան կայարանի կոլեկտիվը, որը մրցում է եղբայրական Ուկրաինայի՝ Կիևի երկաթուղայինների հետ, հատկապես վերջին երկու տարում հասավ զգալի հաջողությունների։ Հարյուրավոր երկաթուղայիններ աշխատելով բարձր արտադրողականությամբ, իրենց քրտնաջան աշխատանքով կրճատում են վագոնների պարապուրդը, պայքարում ավելի շատ բեռներ փոխադրելու համար։ Նրանց մեջ աչքի ընկնող տեղ են գրավում նորարարները։

Այստեղ բեռնային աշխատանքում ծնունդ առավ վագոնները խտացված բեռնելու մի նոր եղանակ։ Դրա հեղինակը կայարանի տրանսպորտա-էքսպեդիցիոն գրասենյակի ավագ կշռավար Գերասիմ Մկրտչյանն է։

Սկզբնական շրջանում սովորաբար օդային կոմպրեսորները փոխադրվում էին մեծ արկղներով, որի պատճառով երկսռնանի վագոնում տեղավորվում էր ընդամենը վեց կոմպլեկտ կոմպրեսոր։ Այստեղից առաջ էր գալիս վագոնի թերաբարձում, չէր պաշտպանվում նախատեսված բեռնատարողության նորման։ Եվ շատ պարզ էր, որ փոխա-

դըրվում էր ավելի քիչ բեռ, հսկայական վնաս հասցվում տրանսպորտին։

Ավագ կշռավար Գ. Մկրտչյանը առաջարկեց փոքրացնել կոմպրեսորներ պարունակող արկղների ծավալը, որով վագոնում ստացվում է ավելի շատ ազատ տեղեր։ Նրա մտցրած այս առաջարկը ընդունվեց։ Այժմ վեց կոմպլեկտի փոխարեն, վագոնում տեղավորվում է 18 կոմպլեկտ կոմպրեսոր, հետևապես նրա տարողությունը համեմատաբար ավելացավ ութը տոննայով։ Այսպիսով միայն կոմպրեսորների, տրանսֆորմատորների, հաստոցների և այլ բեռները խտացված եղանակով բեռնելու միջոցով Գ. Մկրտչյանը կարողացավ հասնել այն բանին, որ բացի ավելի շատ բեռ փոխադրելուց, տարեկան ազատվեց 450—500 վագոն, ըզգալիորեն իջեցվեց բեռների փոխադրումների ինքնարժեքը։

Կարևոր նշանակություն տալով վագոնները ավելի խտացված բեռնելու եղանակներին, կայարանի պարտիական կազմակերպության բյուրոն (քարտուղար Պ. Ղազարյան) ձեռնամուխ եղավ աշխատանքի այդ եղանակը բեռնային յուրաքանչյուր աշխատողի հասցնելու գործին։ Առանձնացվեցին տեխնիկապես գրագետ ագիտատորներ



և պարտբյուրոյի հանձնարարությամբ մասսայականացվեց Գ. Մկրտչյանի աշխատանքի եղանակները, որը հրապարակված էր հատուկ բրոշյուրով։ Այդ գործին մեծ չափով նպաստեց պարտիական կազմակերպության նախաձեռնությամբ կազմակերպված տեխնիկական զրույցներն ու զեկուցումները։

Այս բոլորից հետո կայարանի կոլեկտիվը լավ արդյունքների հասավ։ Ծխախոտի, ավտոդողերի, խտացված կերի, հրուշակեղենի, ալյուրի և ուրիշ շատ բեռները խտացված կարգով բեռնելու շնորհիվ ամսական ազատվում է 50—60 վագոն, փոխադրվում է ավելի շատ բեռ, լրիվ չափով օգտագործվում է վագոնի տարողությունը։

Երկար ժամանակ դատարկ վագոնների տեխնիկական զննումը կատարվում էր անմիջականորեն բեռնման կետերում։ Բայց քանի որ այդ կետերը ցրված են վիթխարի տերիտորիայի վրա, վագոնայինները զրկված էին տեխնիկական զննումը և նորոգումները ժամանակին կատարելու հնարավորությունից։ Արդյունքը լինում էր այն, որ հաճախ բեռնման կետերում տասնյակ վագոններ ժամերով մատնվում էին պարապուրդի։

Կայարանի ապրանքային բակի վարիչ Ս.

Հովսեփյանը առաջարկեց, որ վագոնների զննումն ու նորոգումները կատարել ոչ թե բեռնման կետերում, այլև այն ժամանակ, երբ գնացքը ժամանում է տեսակավորման կայարան։ Առաջարկությունը հավանության արժանացավ բաժանմունքի ու կայարանի ղեկավարների կողմից և իրագործվեց։ Հիմա վագոնները տրվում են բեռնման տակ զննված ու նորոգված։ Դրա շնորհիվ ոչ միայն զգալիորեն կրճատվեցին գնացքների պարապուրդները, այլև ապահովվեց գնացքների անվտանգ երթևեկությունը։

Երկաթուղային տրանսպորտում ամենատարբեր արտադրական ցիկլերի գծով ծնունդ են առնում աշխատանքի առաջավոր բազմաթիվ եղանակներ։

Երբ բեռնատար գնացքը հասնում էր Երևան, նրա կազմահատման ժամանակ մերձատար ուղիների համեմատ վագոնների խմբավորում չէր նախատեսվում։ Առաջավոր գնացք կազմող Հ. Մանգասարյանը մշակեց մանևրային աշխատանքի նոր եղանակ։ Գնացքը կայարան հասնելուն պես, առանց ժամանակ կորցնելու նա անցնում է աշխատանքի։ Ամենից առաջ նա վագոններն առանձնացնում է ըստ մանևրային շրջանների, հաշվի առնելով բեռնատիրոջ մերձատար



ուղու տեղադրությունը և ապա կատարում մյուս օպերացիաները։ աշխատանքի այս եղանակը ստեղծեց ժամանակ խնայելու և գնացքների կազմը վերապատրաստելու անհրաժեշտ պայմաններ։

Այս, ինչպես նաև աշխատանքի մի շարք նոր եղանակներ ու մեթոդներ արմատավորելու շնորհիվ Երևան կայարանի երկաթուղայինները 1957 թվականին հասան լուրջ հաջողությունների։ Նրանք վագոնների բեռնման տարեկան առաջադրանքը կատարեցին ժամկետից 13 օր շուտ, մինչև տարվա վերջը պլանից դուրս փոխադրելով մի քանի հազար վոգոն բեռ։ Գերակատարվել է վագոնների բեռնաթափման առաջադրանքը, 1956 թվականի համեմատությամբ զգալիորեն բարձրացել են կայարանի տեխնիկատնտեսական մյուս ցուցանիշները։

Ամրապնդելով ձեռք բերած հաջողությունները, կայարանի կոլեկտիվը մրցություն է ծավալել ՀԿՊ 19-րդ համագումարը, ինչպես նաև ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները արտադրական լավագույն նվերներով դիմավորելու համար։ Երկաթուղայինները խոստացել են բեռների փոխադրումների առաջին եռամսյակի պլանը կատարել ժամկետից 10 օր շուտ։

---

# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԸ

(Թվեր և փաստեր)

*Մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը անընդհատ ծաղկում ու բարգավաճում է: Տարեցտարի ավելանում է արդյունաբերական ձեռնարկությունների արտադրանքի թողարկումը, գնալով կոլտնտեսություններն ու սովխոզները երկրին ավելի շատ կենսամթերք են տալիս: Ահա այդ են հաստատում հետևյալ թվերն ու փաստերը:*

✪ *Մեծ Հոկտեմբերի 40-րդ տարեդարձի տոնակատարության օրը ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների մեծամասնությունը ժամկետից շուտ կատարելով արտադրական առաջադրանքները, պլանից դուրս երկրին տվեց 193 միլիոն ռուբլու արտադրանք:*

✪ *Ներկայումս ռեսպուբլիկայում գործում են 600 արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք արտադրում են ավելի քան 400*



*տեսակի զանազան արտադրանք, ինչպես, օրինակ, կաուչուկ, պլաստմասսա, հանքային պարարտանյութեր, պղինձ, մոլիբդենի, ցինկի, կապարի կոնցենտրատներ, ալյումին, մետաղահատ հաստոցներ, գեներատորներ, տրանսֆորմատորներ, շրջիկ էլեկտրակայաններ, ցեմենտ և շատ ուրիշ արտադրանք:*

✪ *Հայաստանը Սովետական Միության տարբեր քաղաքներից ամեն տարի ներմուծում էր մոտ 25 հազար էլեկտրամոտոր: Ներկայումս այդպիսի մոտորների արտադրությունը կազմակերպված է ռեսպուբլիկայի ժողտնտխորհի սիստեմի մեջ մտնող էլեկտրատեխնիկական արդյունաբերության ձեռնարկություններում:*

✪ *Վեցերորդ հնգամյակում արդյունաբերական արտադրանքը միջին հաշվով աճելու է 1,7 անգամ, իսկ մեքենաշինական ու էլեկտրատեխնիկական, հաստոցաշինական ու գործիքաշինական ճյուղերի արտադրանքը ավելանալու է 3—5 անգամ:*

✪ *Անցած տարվա 11 ամիսների համախառն արտադրանքի պետական պլանը ռեսպուբլիկայի արդյունաբերությունը կատարել է 103,5 տոկոսով:*

✪ *Արդյունաբերության և նոր օբյեկտների*

շինարարության ընդլայնման կապակցությամբ 1958 թվականին կապիտալ ներդրումները, 1957 թվականի համեմատությամբ, կավելանան 25 տոկոսով, այդ թվում քիմիական արդյունաբերության գծով՝ ավելի քան երկու և կես անգամ։

✪ Վերջին երկու տարում արդյունաբերական արտադրանքի աճը կազմել է 20 տոկոս։ Առավելապես աճել է մեքենաշինությունն ու մետաղամշակումը՝ 35 տոկոսով, քիմիական արդյունաբերությունը՝ 23 տոկոսով։

✪ Միայն անցյալ տարի Հայաստանի արդյունաբերությունը տվել է 100-ից ավելի արտադրանքի նոր տեսակներ։ Ստեղծվել են ժամանակակից ճշգրիտ գործիքաշինության և ավտոմատացման միջոցներ։

✪ 1958 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքի աճը, 1957 թվականի համեմատությամբ, կավելանա 8,4 տոկոսով։

✪ Ներկայումս Սովետական Հայաստանի արդյունաբերությունը մեկ օրում թողարկում է այնքան արտադրանք, որքան նախառևոլյուցիոն Հայաստանում թողարկվել է ամբողջ 1919 թվականի ընթացքում։

✪ Ռեսպուբլիկայի արդյունաբերական արտադրանքը 1957 թվականին, 1913 թվա-



կանի համեմատությամբ, ավելացել է մոտավորապես 50 անգամ, ընդ որում ծանր արդյունաբերության արտադրանքի ծավալը 1956 թվականին աճել է 136 անգամ։

✪ 1958 թվականին շահույթների ընդհանուր ծավալը, 1957 թվականի համեմատությամբ, կավելանա 27 տոկոսով։

✪ Եթե 1913 թվականին Հայաստանում արտադրվում էր ընդամենը 5,1 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, ապա 1956 թվականին արտադրվեց 450 անգամ ավելի։ Այժմ ռեսպուբլիկայում արտադրվում է ավելի շատ էլեկտրաէներգիա, քան 1913 թվականին արտադրվել է ամբողջ ցարական Ռուսաստանում։

✪ Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության մեջ ներկայումս աշխատում են մոտ 6.000 ինժեներ, 3.500 գյուղատնտեսագոտեխնիկ ու անասնաբույժ և միջնակարգ կրթություն ունեցող մոտ 30 հազար զանազան մասնագետներ։

✪ Բնակարանային շինարարության կապիտալ ներդրումները ռեսպուբլիկայում այս տարի, 1957 թվականի համեմատությամբ, կաճեն 34,6 տոկոսով։

✪ 1960 թվականին կավարտվեն Ղարադաղ—Աղստաֆա—Երևան գազամուղի կա-

ռուցման աշխատանքները և մեր մայրաքաղաքը կապահովվի էժան և շատ արժեքավոր վառելանյութով։

✪ Ռեսպուբլիկայում 1957 թվականին ոռոգելի տարածությունները հասան 213 հազար հեկտարի, 1913 թվականին եղած 97 հազար հեկտար տարածության դիմաց։ Ներկայումս կառուցվում են Թալինի, Արզնի—Շամիրամի, Կոտայքի, Նորքի, Ստորին Հրազդանի և այլ ջրանցքներ։ Այս ջրանցքների գործարկումով ռեսպուբլիկայի ոռոգելի տարածությունը կընդարձակվի ևս 60 հազար հեկտարով։

✪ Ներկայումս Հայաստանի կոլտնտեսային դաշտերում աշխատում են 5649 տրակտոր (15 ձիու ուժի վերածած), 909 կոմբայն և մեծ քանակությամբ խոտհնձիչներ, սիլոսային կոմբայններ և գյուղատնտեսական այլ մեքենաներ։

✪ Հինգերորդ հնգամյակում զգալի չափով աճել է տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը։ Բամբակի համախառն բերքը ավելացել է 47 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 50 տոկոսով, ծխախոտինը՝ 78 տոկոսով, իսկ խաղողինը՝ 29 տոկոսով։

✪ Նույն այդ ժամանակամիջոցում անասունների ընդհանուր գլխաքանակը ավելացել



է 21 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 36 տոկոսով, խոզերինը՝ 62 տոկոսով, ոչխարներինը՝ 47 տոկոսով։

✪ Եթե 1950 թվականին ռեսպուբլիկայում արտադրվել է (կենդանի քաշով) միս՝ 16,2 հազար տոննա, կաթ՝ 133,4 հազար տոննա, բուրդ՝ 1,745 տոննա, ձու՝ 42,6 միլիոն հատ, ապա 1956 թվականին մսի արտադրությունը ավելացավ և հասավ 28,4 հազար տոննայի, կաթինը՝ 243,8 հազար տոննայի, բրդինը՝ 2,888 տոննայի, ձվինը՝ 92,6 միլիոն հատի։

✪ 1955 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, կոլտնտեսությունների դրամական եկամուտները ավելացան 3 անգամ, անբաժանելի ֆոնդերը՝ 4 անգամ, իսկ արտադրության հիմնական միջոցները՝ 3,8 անգամ։

✪ Անցյալ տարվա 9 ամսվա ընթացքում կոլտնտեսություններում կաթի արտադրությունը ավելացել է 15 տոկոսով, մսինը՝ 15,1 տոկոսով։ Եթե 1956 թվականին կոլտնտեսություններում ստացվել է մոտ 110 հազար տոննա կաթ, ապա 1957 թվականի 9 ամսվա ընթացքում ստացվել է 113 հազար տոննա։ Յուրաքանչյուր կովի կաթնատվությունը 1.056 կիլոգրամի փոխարեն կազմել է 1215 կիլոգրամ։

———

# ԱՍԻԱՅԻ ԵՎ ԱՖՐԻԿԱՅԻ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ ՀԶՈՐ ՑՈՒՅՑԸ

Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

1957 թվականի վերջին օրերը նշանավորվեցին միջազգային կյանքում տեղի ունեցած խոշորագույն իրադարձությամբ։ Դեկտեմբերի 26-ին, Եգիպտոսի մայրաքաղաք Կահիրեում բացվեց Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների համերաշխության կոնֆերանսը։ Երկրագնդի երկու խոշորագույն մայր ցամաքների տարբեր ծայրերից Կահիրե էին եկել 45 երկրների պատգամավորներ, որոնք ներկայացնում էին աշխարհի ամբողջ բնակչության կեսից ավելին։ Կոնֆերանսում տիրում էր իրավահավասարության, փոխըմբռնողության և բարեկամական համերաշխության ոգին, թեև այնտեղ էին հավաքվել սպիտակամորթներ ու սևամորթներ, ամենատարբեր քաղաքական հայացքների ու կրոնական պաշտամունքների պատկանող և սոցիալական տարբեր դիրք ունե-



ցող մարդիկ։ Կոնֆերանսի մասնակիցները քննարկեցին Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների կյանքում և միջազգային հարաբերությունների ասպարեզում տեղի ունեցած այն փոփոխությունները, որոնցով այնքան հարուստ է Բանդունգի կոնֆերանսից հետո ընկած ժամանակաշրջանը։

Ժամանակակից միջազգային դրության մասին զեկուցեց Հնդկաստանի ներկայացուցիչը։ Եգիպտոսի ներկայացուցիչները զեկուցեցին իմպերիալիզմի և ժողովուրդների անկախության ու սուվերենության իրավունքների պաշտպանության, կուլտուրական համագործակցության, կանանց ու երեխաների դրության մասին։ Կոնֆերանսում լայնորեն քննարկվեցին նաև միջուկային զենքի գործադրման ու փորձարկումների արգելման, գաղութակալության, ռասայական խտրականության և այլ հարցեր, որոնց մասին զեկուցեցին Ինդոնեզիայի, Ճապոնիայի, Սիրիայի, Սովետական Միության, Սուդանի և այլ երկրների ներկայացուցիչները։

Կոնֆերանսում արված բոլոր զեկուցումներում և ելույթներում կարմիր թելի պես անցնում է Բանդունգի կոնֆերանսի հռչակած այն գաղափարը, որ գաղութակալու-

թյունը պետք է անպայման վերացվի իր բոլոր արտահայտություններով հանդերձ։

Վերջին 3—4 տարիների ընթացքում Ասիայի և Աֆրիկայի մի շարք երկրներում ևս ազգային-ազատագրական պայքարը լուրջ հաջողությունների հասավ։ Իմպերիալիզմի ու գաղութակալության շղթաները ջախջախեցին ու ազգային ինքնուրույն կարգացման ուղին բռնեցին Թունիսի, Մարոկկոյի, Գանայի, Մալայայի և մի շարք այլ երկրների ժողովուրդները։ Ազգային ազատագրության համար մղվող պայքարը նոր թափ է ստացել այնպիսի երկրներում, որտեղ իմպերիալիստական գաղութակալությունը դեռևս իրեն համարում է դրության տերը։ Ալժիրում, Իսպանական Իֆնիում (Մարոկկո), Կենիայում, Կամերունում և մի շարք այլ երկրներում ապստամբած ժողովուրդը զենքը ձեռքին կենաց և մահու պայքար է մղում հանուն ազատության։ Գաղութակալության լծից ազատագրված ժողովուրդները անարգանքի սյունին են գամում իմպերալիզմը, որը ամեն կերպ փորձում է նորից վերականգնել իր տիրապետությունը նախկին գաղութային երկրներում։ Այդպիսի փորձերից մի քանիսը արդեն խայտառակ ձախողման ենթարկվեցին։ Հիշենք 1956 թվականի



անգլո-ֆրանս-իսրայելական ագրեսիան Եգիպտոսի նկատմամբ, ԱՄՆ-ի դրդմամբ և օգնությամբ Սիրիայի դեմ Թուրքական նախապատրաստվող պրովոկացիան, հոլանդաամերիկյան խժդժությունները Ինդոնեզիայում և այլն։ Հայտնի է, թե ինչով վերջացան այդ փորձերը։ Կահիրեի կոնֆերանսը հաստատ համոզմունք հայտնեց, որ նույնանման ձախողման կենթարկվեն նաև մյուս բոլոր փորձերը, եթե իմպերիալիզմը դրանք նորից կկրկնի։

Կոնֆերանսը ընդունեց մի ընդարձակ Դեկլարացիա, որը աշխարհի բոլոր պետություններին կոչ է անում միջազգային հարաբերությունների հիմքում դնել 1955 թվականի ապրիլին կայացած Բանդունգի կոնֆերանսի հռչակած տասը սկզբունքները, որոնք նշում են զինաթափման, տարբեր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության, ժողովուրդների իրավահավասարության և անվտանգության ապահովման ուղիները։

ԱՄՆ-ի, Անգլիայի և ՍՍՌՄ-ի կառավարություններին ուղղված հատուկ Կոչում, կոնֆերանսը առաջարկեց անհապաղ ձեռնամուխ լինել զինաթափմանը։ Միաժամանակ Կոչը ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարու-

թյուններին առաջարկում է ընդունել ՍՍՌՄ կառավարության նախաձեռնությունը՝ 1958 թվականից դադարեցնել միջուկային զենքի փորձարկումները և ոչնչացնել նրա բոլոր պաշարները։

Կոնֆերանսը Աֆրիկայի և Ասիայի ժողովուրդների անունից հայտարարեց, որ երկրագնդի այդ երկու խոշորագույն մայր ցամաքները միշտ կլինեն խաղաղության գոտի, ուր երբեք տեղ չեն գտնի ոչ միջուկային և ոչ էլ հրթիռային զենքերը։

Իմպերիալիզմի վերաբերյալ բանաձևում խստագույն դատապարտման են ենթարկվում իմպերիալիստական ագրեսիվ խմբավորումներն ու բլոկները՝ ՆԱՏՕ-ն, ՍԵԱՏՈ-ն, Բաղդադի պակտը և «Դալլես-Էյզենհաուերի դոկտրինան»։ Բանաձևում ասվում է, որ «իմպերալիզմի հետագա գոյությունը անհամատեղելի է նոր ժամանակաշրջանի հետ» և որ «Ասիայի ու Աֆրիկայի ժողովուրդները հաստատ հավատում են բոլոր ժողովուրդների՝ ազատության և անկախության իրավունքին»։

Կոնֆերանսի մասնակիցների ընդհանուր հավանությանն արժանացավ ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեային ուղղված այն բանաձևը, որը պահանջում է վերականգնել Չինական



Ժողովրդական Ռեսպուբլիկայի օրինական տեղը ՄԱԿ-ում, ՄԱԿ-ի մեջ ընդունել Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան։

Կոնֆերանսը քննարկեց և հատուկ բանաձև ընդունեց տարբեր երկրների միջև տնտեսական, կուլտուրական և գիտա-տեխնիկական համագործակցության զարգացման մասին։

Բանաձևը կոչ է անում առանց խտրականության զարգացնել ու ընդլայնել առևտրական հարաբերությունները տարբեր երկրների միջև, օգնել թույլ զարգացած երկրների տնտեսության վերականգնմանը և ինդուստրացմանը, ամրապնդել կուլտուրական կապերը։

Կոնֆերանսի աշխատանքների ժամանակ ուշադրության կենտրոնում էր գտնվում Սովետական Միության պատվիրակությունը՝ Ուզբեկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ Շ. Ռ. Ռաշիդովի գլխավորությամբ։

Կոնֆերանսին ՍՍՌՄ-ի ներկայացուցիչների մասնակցությունը Աֆրիկայի և Ասիայի ժողովուրդների կողմից դիտվում է որպես այդ ժողովուրդների ազատագրական մեծ պայքարին ՍՍՌՄ-ի ցույց տված բազմակողմանի օգնության և աջակցության մի նոր վկայություն։ Հանդես գալով Կահիրեում

կազմակերպված պրես-կոնֆերանսում, Շ. Ռ. Ռաշիդովը հայտարարեց. «Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդները անշահախնդիր բարեկամներ ունեն ի դեմս Սովետական Միության, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և բոլոր սոցիալիստական երկրների, որոնք հետևողականորեն վարում են բոլոր ազատասեր ժողովուրդների շահերին համապատասխան արդարացի քաղաքականություն»։

Կոնֆերանսում «ՍՍՌՄ-ը և տնտեսական հարաբերությունները Ասիայի ու Աֆրիկայի երկրների միջև» հարցի վերաբերյալ ծավալուն զեկուցում կարդաց Սովետական պատվիրակության անդամ Ս. Ա. Արզումանյանը։ Նշելով այդ երկրների միջև հին, անարդարացի տնտեսական հարաբերությունների վերացման և իրավահավասարության ու փոխադարձ շահավետության սկզբունքների վրա հիմնված տնտեսական հարաբերություններ հաստատելու անհրաժեշտությունը, Ա. Ա. Արզումանյանը ցույց տվեց, որ Սովետական Միությունը այդ երկրների հետ կատարվող տնտեսական գործարքներում ելնում է հենց այդպիսի պրոգրեսիվ սկզբունքներից։ ՍՍՌ Միությունը գտնում է, ասաց սովետական պատվիրակության անդամը, որ թույլ զար-



գացած երկրներին օգնություն ցույց տալու գլխավոր, վճռական պայմանն այն է, որ այդ օգնությունը ցույց տրվի առանց որևէ քաղաքական, տնտեսական, ռազմական կամ սոցիալական պայմանների առաջադրման։ Սովետական պատվիրակը փաստեր բերեց ՍՍՌՄ-ի և Ասիայի ու Աֆրիկայի շատ երկրների միջև ապրանքաշրջանառության անշեղ աճման մասին։ Միայն վերջին 6—7 տարիների ընթացքում ապրանքաշրջանառությունը ՍՍՌՄ-ի և Հարավ-Արևելյան Ասիայի ու Մերձավոր Արևելքի երկրների միջև աճել է 4,5 անգամ։ Մեծ չափով աճել է այդ երկրների ապրանքաշրջանառությունը նաև Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և մյուս սոցիալիստական երկրների հետ։

Կոնֆերանսը ջերմորեն հավանություն տվեց սովետական պատվիրակի զեկուցմանը և հատուկ կերպով ընդգծեց Ասիայի ու Աֆրիկայի թույլ զարգացած երկրների տնտեսության ու պետականության զարգացման ու ամրապնդման գործում Սովետական Միության ցույց տված անշահախնդիր օգնության մեծ կարևորությունը։

Դժվար է գերագնահատել Կահիրեի կոնֆերանսի պատմական որոշումների նշանակությունը իմպերիալիզմի ու գաղութակալու-

*թյան հիմքերը վերջնականապես խարխլելու, ժողովուրդների միջև բարեկամության ամրապնդելու և ամբողջ աշխարհում խաղաղության կայունացնելու գործում։ Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդները Կահիրեի կոնֆերանսի իրենց պատվիրակների բերանով կրկին անգամ ի լուր ամբողջ աշխարհի վճռականորեն հայտարարեցին, որ նրանք դատապարտում են պատերազմի նախապատրաստման և սանձազերծման հանցավոր քաղաքականությունը։*

*Կոնֆերանսի որոշումները խանդավառությամբ ընդունվեցին ոչ միայն այդ երկու խոշոր մայր ցամաքների բնակչության կողմից, այլև երկրագնդի մյուս մայր ցամաքների տասնյակ և հարյուր միլիոնավոր բարի կամքի տեր մարդկանց կողմից։*

*Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների ժողովուրդները ողջունում են Կահիրեի պատմական կոնֆերանսի որոշումները և կրկնապատկում իրենց եռանդն ու կարողությունները ժողովուրդների իրավահավասարության, խաղաղության ու միջազգային անվտանգության համար մղվող պայքարը վերջնական հաղթանակի հասցնելու համար։*

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՓԵՏՐՎԱՐ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. *ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ*

### Գրականություն

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիա *(Հիմնական օրենք)։*

Կանոնադրություն ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների, *Հայպետհրատ, 1958։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները. *«Ս. Հ.»-ի 1958 թվականի հունվարի 7-ի առաջնորդողը։*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների ընտրական օկրուգների մասին ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրից, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի հունվարի 5-ի համարում։*

Ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը ընտրական կամպանիայում, *«Պրավդա»-ի 1958 թվականի հունվարի 14-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի հունվարի 15-ի համարում։*

## 2. ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐԸ

Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ, արտասանած «Կարմիր սպայի տանը» *1918 թ. նոյեմբերի 24-ին, Երկեր, հատոր 28, 4-րդ հրատարակություն, էջ 238—239։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Դիմում Կարմիր Բանակին, *Երկեր, հատոր 29, 4-րդ հրատարակություն, էջ 290—291։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ճառ Կոլչակի դեմ մղվող պայքարի մասին *Մոսկվայի ֆաբրիկա-գործարանային կոմիտեների և արհմիութենական միությունների կոնֆերանսում, 17 ապրիլի 1919 թվականի, Երկեր ,հատոր 29, 4-րդ հրատարակություն, էջ 388—393։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Կարմիր Բանակի երեք առանձնահատկությունների մասին, *Երկեր, հատոր 11, Հայպետհրատ, 1949։*

## 3. ՀԱՄԿՍ ՍՏԱՆԻ ԿՈՄՊԱՐՏԻԱՅԻ 19-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

## 4. ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի իններորդ սեսիայում *1957 թվականի դեկտեմբերի 21-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի դեկտեմբերի 22-ի համարում։*



*Օգտագործել «Սովետական Հայաստան» թերթի 1957 թվականի դեկտեմբերի 20—22-ի համարներում տպագրված նյութերը։*

ՍՍՌՄ 1958 թվականի Պետական բյուջեն, *տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1958 թվականի առաջին համարում։*

## 5. ԴԵՐԱՍԱՆՑ ՅՈՒՅԱՆԻՇՆԵՐՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ 1958 ԹՎԱԿԱՆԻ ԱՌԱՋԻՆ ԵՌԱՄՍՅԱԿԻ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆԸ

Գրականություն

Սովետական Միության ժողովուրդներին, *ՍՍՌՄ Գերագույն Սովետի Դիմումը, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

Դեպի ժողովրդական տնտեսության նոր հզոր վերելք, *«Պրավդա»-ի 1957 թվականի նոյեմբերի 11-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի նոյեմբերի 12-ի համարում։*

Պարտկազմակերպությունները և արտադրանքի որակի բարձրացման հարցերը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունվարի 11-ի համարում։*

Ապահովել ձեռնարկությունների համաչափ աշխատանքը, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի հունվարի 14-ի առաջնորդողը։*

### 6. ԳԱՐՆԱՆԱՑԱՆԻ ՀԱՄԱՐ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏԵՆՔ ՏԵՍԱԿԱՎՈՐ, ԱՌՈՂՋ ԵՎ ՄԱՔՈՒՐ ՍԵՐՄԱՑՈՒ

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սերմնաբուծությունը գյուղատնտեսության վերելքի կարևոր օղակն է, *ՍՄԿՊ 20-րդ համագումարին տված հաշվետու զեկուցումից, Հայպետհրատ, 1956 թ.։*

Օրինակելիորեն նախապատրաստվել գարնանացանին, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի հունվարի 16-ի առաջնորդողը։*

### 7. ՍՍՌՄ-Ը ՊԱՅՔԱՐՈՒՄ Է ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԻ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՀԱՄԱՐ

Գրականություն

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի իններորդ սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի դեկտեմբերի 22-ի համարում։*

ՍՍՌՄ Արտաքին գործերի մինիստր Ա. Ա. Գրոմիկոյի ճայտարարությունը ՍՍՌՄ Գերագույն Սովետի իններորդ սեսիայում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի դեկտեմբերի 24-ի համարում։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ա. Բուլգանինի ուղերձները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունվարի 11—16-ի համարներում։*

---

---

# ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

*ԼՈԿԱԼ—Լատինական բառ է, որ նշանակում է տեղական, միայն մեկ տեղին հատուկ, որոշ սահմաններից դուրս չեկող։*

*Վերջերս լոկալ բառը շատ է օգտագործվում քաղաքական տերմինոլոգիայում։ Բանն այն է, որ ԱՄՆ-ում այժմ ստեղծվել է մի հատուկ դոկտրինա (քաղաքական ուսմունք, սիստեմ), որն ուժգին կերպով պրոպագանդվում է ՆԱՏՕ-ի մասնակից երկրներում։ Դա «լոկալ» կամ «փոքր» պատերազմների դոկտրինան է։ Դրա հեղինակները փորձում են ապացուցել, որ մեծ տերությունները միջմայրցամաքային բալիստիկ հրթիռների և ջերմամիջուկային զենքի էպոխայում «մեծ» ատոմային պատերազմի ռիսկի չեն դիմի, ուստի ներկայումս աշխարհում պետք է տեղ գտնեն միայն «փոքր» կամ «լոկալ» («տեղական») ատոմային պատերազմները, որոնց կմասնակցեն միայն մեծ տերություններին դաշնակից առանձին երկրներ։ Այստեղից էլ հետևյալ եզրակացությունն են անում՝ անհրաժեշտ է ԱՄՆ-ի դաշնակիցներին զինել ժամանակակից զենքի բոլոր տեսակներով, նրանց նախապատրաստել ագրեսիայի՝ սոցիալիստական երկրների, ազգային-ազատագրական շարժումների, պետությունների սուվերենության դեմ, այսինքն՝ ԱՄՆ-ին դաշնակից երկրների ժո-*

ղովուրդներին դարձնել թնդանոթի միս ամերիկյան իմպերիալիզմի համար։

«Փոքր» կամ «լոկալ» պատերազմների տեսության հեղինակները հանդես են բերում բավականին ոչ-հեռատեսություն, բայց ավելի ճիշտ նրանց, ամերիկյան իմպերիալիստ տերերի նպատակն է հանգստացնել ռազմական նախապատրաստության մեջ ներքաշված ՆԱՏՕ-ի երկրներին, որ «մեծ» պատերազմներ չեն լինի։ Սակայն այժմ վտանգավոր մոլորություն կլինի կարծել, որ եթե բռնկի պատերազմ, ապա կարելի է այն սահմանափակել մի շրջանում, որ այն կարող է մնալ «փոքր», «տեղական» բնույթի պատերազմ։ Այժմ ռազմական տեխնիկայի՝ ատոմային և հրթիռային զենքի այնքան բուռն զարգացման էպոխայում, արդեն անհնարին է պատերազմը պահել որոշ աշխարհագրական սահմանների մեջ։ Ժամանակակից զենքի տեսակների գործողության համար այլևս չկան աշխարհագրական սահմաններ։ Դրանից բացի, պատերազմի «լոկալիզացիա» (տեղայնացում, որոշ տեղում սահմանափակում) անհնարին է նաև այն պատճառով, որ միջազգային արենայում վերջին տարիների ընթացքում տեղի են ունեցել քաղաքական մեծ փոփոխություններ։ Տասնյակ պետություններ աշխարհի տարբեր մասերում ներգրավվել են իրար հակառակորդ ռազմական խմբավորումների մեջ։ Մի պետության ներքաշումը պատերազմի մեջ առաջ կբերի շղթայաձև ռեակցիայի նման նաև տվյալ խմբավորման մյուս պետությունների մաս-



նակցությունը պատերազմին, քանի որ նրանք բոլորն իրար հետ փոխադարձ պարտավորություններով են կապված (ՆԱՏՕ-ի, Բաղդադի պակտի և ՍԵԱՏՕ-ի մասնակից երկրներն իրար հետ կապված են փոխադարձ պարտավորություններով, այս ագրեսիվ իմպերիալիստական բլոկների դեմ է կանգնած Վարշավայի պայմանագրի մասնակից սոցիալիստական երկրների խմբավորումը, որը պաշտպանական նպատակներով է ստեղծվել, որտեղ նույնպես փոխպարտավորություն կա պետությունների միջև)։ Այսպիսով, չպետք է կարծել, թե ժամանակակից պայմաններում փոքր պատերազմները կարող են լինել լոկալ (տեղական)։ Եթե այդպիսի պատերազմներ ծագեն, ապա նրանք արագորեն կարող են վերաճել համաշխարհային պատերազմի, որը մարդկությանը կպատճառի անհամար զոհեր և ավերածություններ։

ՊՐԵՎԵՆՏԻՎ—Լատինական ծագում ունեցող բառ է, որ նշանակում է նախազգուշական, կանխողական, նախապահպանական։

Այժմ Արևմուտքի որոշ երկրներում շատ են խոսում «պրեվենտիվ» պատերազմի մասին։ Պրեվենտիվ պատերազմը ձեռնարկվում է մյուս կողմի հարձակումը կանխելու նպատակով։

Պրեվենտիվ պատերազմի մասին աղմկելը բուրժուական դիվանագիտության պրիոմներից է, որն օգտագործվում է մի կողմից՝ ուրիշ պետություններին վախեցնելու և սպառնալու միջոցով ստիպել՝ քաղաքական

զիջումների դիմել և մյուս կողմից՝ քողարկելու ագրեսիվ պատերազմի իրենց նախապատրաստությունը։ Այդպիսի մեթոդներով ֆաշիստական Գերմանիան 1938—1939 թ. թ. ագրեսիա կատարեց Եվրոպայի մի շարք երկրների դեմ։

Վերջին ժամանակներս արևմտյան մի քանի երկրներում ուժեղացել են պրեվենտիվ պատերազմի կոչերը, բացահայտ կերպով քննարկվում են առաջին հարված հասցնելու առավելությունները։ Ագրեսիվ իմպերիալիստական ուժերը, աղմկում են «սովետական հարձակման», «միջազգային կոմունիզմի համաշխարհային տիրապետության վտանգի մասին» և դրան հակադրում սոցիալիզմի երկրների դեմ «պրեվենտիվ» պատերազմի, նրանց առաջին հարված հասցնելու կոչերը, իբր թե կապիտալիստական երկրների վրա սոցիալիստական երկրների նախապատրաստվող ռազմական հարձակումը կանխելու համար։ Մինչդեռ հայտնի է, որ Սովետական Միությունը, սոցիալիստական մյուս երկրները երբեք չեն հարձակվել որևէ երկրի վրա և չեն հարձակվի, նրանք վարել ու վարում են խաղաղասիրական արտաքին քաղաքականություն, դա բխում է նրանց էությունից։ Մինչդեռ իմպերիալիստական երկրներն են, որ այսօր տենդագին նոր ագրեսիվ պատերազմի են նախապատրաստվում և այն փորձում են ներկայացնել որպես պաշտպանական, կանխողական, նախազգուշական՝ պրեվենտիվ։

---

## СОДЕРЖАНИЕ



---


Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ